## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին։ Հեռախոս՝ 2—52—78




# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*33 տարի առաջ, 1920 թվականի նոյեմբերի 29-ին, Հայաստանի աշխատավորները Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ, ընդմիշտ տապալեցին անգլո-ամերիկյան իմպերիալիստների ստոր վարձկաններ, հայ ժողովրդի ամենաոխերիմ թշնամիներ դաշնակների արյունոտ լուծը և Հայաստանում հաստատեցին սովետական իշխանություն։*

*Սովետական Հայաստանը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ծնունդն է։*

*1920 թվականի դեկտեմբերի 4-ին «Կեցցե Սովետական Հայաստանը» հոդվածում Ի. Վ. Ստալինը գրել է. «Տանջված ու բազմաչարչար, Անտանտայի և դաշնակների ողորմածությամբ սովի, քայքայման ու գաղթի մատնված Հայաստանը,— բոլոր «բարեկամների» կողմից խաբված այդ Հայաստա-*

նը այժմ իր փրկությունը գտավ այն բանի մեջ, որ իրեն հայտարարեց Սովետական երկիր»։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանը դարձավ առաջավոր ինդուստրիալ, կոլտնտեսային գյուղատնտեսության, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական ծաղկող կուլտուրայի երկիր։ ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը կառուցեց սոցիալիզմ և այժմ վստահ կերպով ընթանում է կոմունիզմի ուղիով։

Հայաստանում սովետական կարգերի հաստատման 33-րդ տարեդարձը մեր ռեսպուբլիկայի աշխատավորները դիմավորում են տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած մեծ հաջողություններով։

Կոմունիստական պարտիայի լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևողական կիրառման շնորհիվ Սովետական Հայաստանը տնտեսական և կուլտուրական աննախընթաց վերելք է ապրում։ Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծվեցին բարձր զարգացած քիմիական, մետալուրգիական արդյունաբերություն, էլեկտրաարդյունաբերություն, հաստոցաշինարարության և ծանր արդյունաբե-



րության մի շարք այլ ճյուղեր։ Հետպատերազմյան ժամանակաշրջանում շահագործման հանձնվեցին մի քանի տասնյակ խոշոր ձեռնարկություններ, ստեղծվեց էլեկտրոլիտային, պղնձի, ալյումինի, կաբելի, գեներատորների, տրանսֆորմատորների, հիդրոտուրբինների, կոմպրեսորների, մետաղահատ դազգահների, ավտոմոբիլային ու տրակտորային պահեստի մասերի, ժամացույցների, էլեկտրաչափիչ գործիքների արդյունաբերությունը։ Աճեց սինթետիկ կաուչուկի, ավտոդողերի, սոդայի և հանքային մի շարք պարարտանյութերի արտադրությունը։

Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերական արտադրանքը 1952 թվականին 1940 թվականի մակարդակը գերազանցեց 3,2 անգամ, 1953 թվականին թողարկվելիք արդյունաբերական արտադրանքի ծավալը ավելի քան չորս անգամ կգերազանցի նախապատերազմյան 1940 թվականի ծավալը։ Հատկապես աճել է արտադրանքի այնպիսի կարևոր տեսակների թողարկումը, ինչպիսին պղինձն է, էլեկտրաէներգիան, ցեմենտը, քիմիական արդյունաբերության արտադրանքը, էլեկտրասարքավորումները, մետաղամշակման հաստոցները և այլն։

Հայաստանի աշխատավորները պատվով

են կատարում մեծ Լենինի պատգամները երկրի էլեկտրիֆիկացման մասին։

1919 թվականին Հայաստանում գրեթե չկար էլեկտրաարդյունաբերություն, իսկ ներկայումս ռեսպուբլիկայում կա ավելի քան 110 էլեկտրակայան։ Այժմ Սովետական Հայաստանում գործում են ավելի քան 54 գյուղական էլեկտրակայաններ։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 80 տոկոսից ավելին էլեկտրիֆիկացված է և էլեկտրաէներգիան հաջողությամբ օգտագործվում է գյուղատնտեսական արտադրության մեջ։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1952 թվականին, համեմատած 1940 թվականի հետ, աճել է 3,3 անգամ։ Սևան-Զանգուկասկադի կառուցումը և էլեկտրաէներգիայի հրակայական աճը նոր, լայն հեռանկարներ է բացում ռեսպուբլիկայի արդյունաբերության, առանձնապես ծանր արդյունաբերության և մետաղամշակման համար, ինչպես նաև գյուղատնտեսության հետագա զարգացման համար։

Սովետական իշխանության տարիներին մեր ռեսպուբլիկայում ստեղծվել է թեթև և սննդի բազմաճյուղ զարգացած արդյունաբերություն։ Բավական է նշել, որ 1940 թվականի համեմատությամբ 1953 թվականին



բամբակե գործվածքների արտադրությունը աճել է 191,8 տոկոսով, մետաքսե գործվածքներինը՝ 17 անգամ, փափուկ և կոշտ կաշվի արտադրությունը 257—300 տոկոսով, զգալիորեն աճել է բրդյա գործվածքների, կոշկեղենի և կենցաղային իրերի արտադրությունը։ Ռեսպուբլիկայի սննդի արդյունաբերությունը թողարկում է ավելի քան 400 տեսակ արտադրանք։

Պարտիան և կառավարությունը խնդիր են դրել, մոտակա տարիներում խիստ բարձրացնել բնակչության ապահովվածությունը արդյունաբերական և պարենային ապրանքներով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով։

1954—55 թվականներին ռեսպուբլիկայում կենցաղային սպասարկման ձեռնարկությունների թիվը կավելանա 2—3 անգամ։ Նախատեսվում է կառուցել մաhճակալների արտադրության ձեռնարկություն, որը տարեկան տալու է 100.000 միավոր, մետաղյա ամանների արտադրության գործարան, որը տարեկան տալու է 1000 տոննա էմալապատ և 1000 տոննա ալյումինե ամանեղեն, հայելու ֆաբրիկա, երաժշտական գործիքների ֆաբրիկա, կահույքի ֆաբրիկա, որը տարեկան տալու է 5 միլ. ռուբլու կահույք, գալանտերիայի ֆաբրիկա՝ 8 միլիոն ռուբլու

արտադրությամբ և այլն։ Առաջիկա 2—3 տարում խիստ կերպով ավելանալու է նաև հագուստեղենի, կոշկեղենի, մսի, յուղի, կաթնեղենի և այլ ապրանքների արտադրությունը։

Մեր ռեսպուբլիկան խոշոր նվաճումներ ունի նաև գյուղատնտեսության բնագավառում։ Տարեցտարի աճում և ամրապնդվում է կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը, ավելանում է գյուղատնտեսական արտադրանքը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում, Սովետական Հայաստանի ցանքատարածությունները, 1919 թվականի համեմատությամբ ընդարձակվել են ավելի քան վեց անգամ։ 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, կոլտնտեսությունների դրամական եկամուտները աճել են ավելի քան 2 անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ 3,5 անգամ և արտադրության հիմնական միջոցները՝ համարյա 3,5 անգամ։

Ռեսպուբլիկայի առաջավոր կոլտնտեսությունները և սովխոզները 1953 թվականին ստացել են տեխնիկական կուլտուրաների, խաղողի, հացահատիկի առատ բերք։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ամենօրյա հոգատա-



րության շնորհիվ մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը մեքենայացման բարձր մակարդակի է հասել։ Ներկայումս մենք ունենք 58 մեքենա-տրակտորային և մեքենաանասնաբուծական կայան։ Ռեսպուբլիկայի մեքենա-տրակտորային կայանների տրակտորային պարկի հզորությունը վերջին երկու տարում ավելացել է 1,5 անգամ, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 2,5 անգամ։

Գյուղատնտեսական աշխատանքների շատ ճյուղերի մեքենայացման և էլեկտրիֆիկացման շնորհիվ զգալի կերպով հեշտացել է կոլտնտեսականների աշխատանքը և բարձրացել է նրա արտադրողականությունը։

Սովետական Հայաստանի կոլտնտեսային գյուղացիությունը զգալի նվաճումներ է ձեռք բերել հանրային անասնաբուծության զարգացման բնագավառում։ Ավելացել է հանրային անասունների գլխաքանակը։ 1952 թվականին, 1940 թվականի համեմատությամբ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է 30,7 տոկոսով, ոչխարներինն ու այծերինը՝ 81,5 տոկոսով, խոզերինը՝ 176,7 տոկոսով։

Բարձրացել է նաև հանրային անասունների մթերատվությունը։ 1952 թվականին յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացվել է

814 կգ. կաթ, 1940 թվականի 581 կգ. դիմաց։ Այդ նույն ժամանակաշրջանում առաջավոր սովխոզները և կոլտնտեսությունները ձեռք են բերել անասունների ավելի բարձր մթերատվություն։ Լոռու տոհմաբուծական սովխոզը 1952 թվականին յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստացել է 3246 կգ. կաթ, Սևանի տոհմաբուծական տնտեսությունը՝ 3200 կգ., Շահումյանի շրջանի Կալինինի անվան կոլտնտեսությունը՝ 3.395 կգ. նույն շրջանի Վորոշիլովի անվան կոլտնտեսությունը՝ 3,258 կգ. և Ստալինի անվան կոլտնտեսությունը՝ 3,051 կգ., Ստեփանավանի շրջանի Սարատովկա գյուղի Խրուշչևի անվան կոլտնտեսությունը՝ 2292 կգ., նույն շրջանի Կաթնաղբյուր գյուղի 17-րդ պարտհամագումարի անվան կոլտնտեսությունը՝ 2241 կգ. և այլն։

Այս հաջողությունները ձեռք են բերվել գյուղատնտեսության բնագավառի աշխատողների անձնվեր աշխատանքի, սովետական գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման շնորհիվ։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը վերջերս խոշոր միջոցառումներ ընդունեցին ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման ու վերելքի համար։



ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը խնդիր դրեց՝ հասնել գյուղատնտեսության բոլոր ճյուղերի շեշտակի վերելքի և երկու-երեք տարվա ընթացքում խիստ բարձրացնել մեր երկրի ամբողջ բնակչության ապահովվածությունը պարենային ապրանքներով ու դրա հետ մեկտեղ կոլտնտեսային գյուղացիության ամբողջ մասսայի համար ապահովել նյութական բարեկեցության առավել բարձր մակարդակ։

Գյուղատնտեսության հետագա վերելքի գծով անհետաձգելի միջոցառումների իրագործման համար Սովետական պետությունը 1953 թվականին լրացուցիչ կերպով կծախսի ավելի քան 15 միլիարդ ռուբլի և 1954 թվականին՝ ավելի քան 35 միլիարդ ռուբլի։ Այդ գումարի զգալի մասն արդեն ծախսվում է գյուղատնտեսության մեջ լրացուցիչ կապիտալ ներդրումների համար, անասնաբուծության, կարտոֆիլի ու բանջարեղենի արտադրության զարգացման գործում կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու համար։ Դրա շնորհիվ կոլտնտեսությունները և կոլտնտեսականները այս տարի կստանան ավելի քան 13 միլիարդ ռուբլու և 1954 թվականին՝ ավելի քան 20 միլիարդ ռուբլու լրացուցիչ եկամուտներ։

Այդ միջոցառումների իրագործումն է՛լ ավելի կամրապնդի կոլտնտեսային կարգը, կապահովի գյուղատնտեսության ետ մնացող ճյուղերի շեշտակի վերելքը։

Անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումները, ռեսպուբլիկայում մոտակա 2—3 տարում նախատեսվում է մեծ չափերով ավելացնել անասունների գլխաքանակը և մթերատվությունը։ Միաժամանակ խոշոր աշխատանք է կատարվելու կերի կայուն բազա ստեղծելու, անասունները կերերով լրիվին ապահովելու ուղղությամբ։ Ընդարձակվելու են կերի բազմամյա և սիլոսային կուլտուրաների, ինչպես նաև արմատապտուղների ցանքատարածությունները։

Նախատեսվում է ռեսպուբլիկայում 1954 թվականին կարտոֆիլի ցանք կատարել 16,000 հեկտար, բանջարաբոստանային կուլտուրաներինը՝ մինչև 10.000 հեկտար, իսկ 1955 թվականին՝ մինչև 12.000 հեկտար։ Զգալի չափով պետք է ավելացվի դրանց բերքատվությունը։

1954 թվականին խաղողի այգիների տարածությունը ավելացվելու է 2 հազար 200 հեկտարով, պտղատու այգիներինը՝ 2 հազար 100 հեկտարով, իսկ 1955 թվականին խա-



ղողի այգիներինը՝ 3,8 հազար հեկտարով, պտղատու այգիներինը՝ 3,9 հազար հեկտարով։ Մոտ ժամանակներս ջրովի հողերում խաղողի բերքատվությունը հասցվելու է հեկտարից առնվազն 100 ցենտների, իսկ պտուղներինը՝ 50—60 ցենտների։ Խիստ կերպով բարձրացվելու է հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը։

Ժողովրդական տնտեսության մեջ ձեռք բերած հաջողությունների հիման վրա բարձրանում է մեր ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակը։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության բարձրագույն օրենքը աշխատավորների նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքների առավելագույն բավարարումն է։ Մեր երկրում տարեցտարի ավելանում է մասսայական սպառման ապրանքների թողարկումը։ Իրագործվում է արդյունաբերական և պարենային ապրանքների պետական մանրածախ գների սիստեմատիկ իջեցումը։

Պարտիան ու կառավարությունը 1947 թվականից մինչև 1953 թիվը հետևողականորեն 6 անգամ անցկացրել են արդյունաբե-

րական և պարենային ապրանքների պետական մանրածախ գների իջեցում։ Դրա շնորհիվ պարենային հիմնական ապրանքների գները իջել են երկուս ու կեսից մինչև երեք անգամ, լայն սպառման արդյունաբերական հիմնական ապրանքների գները՝ 1,5 անգամ, իսկ բանվոր-ծառայողների աշխատավարձն ավելացել է մոտ 1,5 անգամ։ Անընդհատ ավելանում են աշխատավորների ռեալ եկամուտները։ Բանվորների և ծառայողների մեկ աշխատողին ընկնող ռեալ եկամուտները 1952 թվականին՝ 68 տոկոսով, կոլտնտեսականներինը՝ 60 տոկոսով բարձր էին, քան 1940 թվականին։

Նշանակալից են մեր նվաճումները առևտրի բնագավառում։ 1953 թվականին ռեսպուբլիկայի ապրանքաշրջանառությունը, 1940 թվականի համեմատությամբ աճել է 2,8 անգամ։ Առաջին անհրաժեշտության ապրանքների վաճառքը 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ աճել է՝ միս-երշիկեղենինը՝ 57 տոկոսով, շաքարինը՝ 65 տոկոսով, հրուշակեղենինը՝ 3 անգամ, յուղինը՝ 8 անգամ, պանրինը՝ 2,6 անգամ։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտկոմի «Սովետական առևտրի հետա-



գա զարգացման միջոցառումների մասին» վերջերս ընդունած որոշումով 1954 թվականին պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը ավելացվում է 72 տոկոսով (համադրելի գներով), 1953 թվականի համար նախատեսված 70 տոկոսի դիմաց, այսինքն հնգամյա պլանի առաջադրանքը գերազանցվում է արդեն 1954 թվականին։ 1955 թվականին մանրածախ ապրանքաշրջանառությունը ավելացվում է 1950 թվականի համեմատությամբ մոտ 2 անգամ։

Սովետական պետությունը հսկայական գումարներ է ծախսում աշխատավորների բնակարանային պայմանների հետագա բարելավման, լուսավորության, առողջապահության, սոցիալական ապահովության, բնակչությանը տրվող վճարումների և արտոնությունների համար։

1953 թվականին ռեսպուբլիկայում բնակարանային շինարարության մեջ կատարվող կապիտալ ներդրումների ծավալը 1952 թվականի համեմատությամբ ավելանում է 49,2 տոկոսով և շահագործման է հանձնվելու մոտ 50 տոկոսով ավելի բնակելի տարածություն։

Մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևա-

նը և մյուս քաղաքները, շրջանային կենտրոնները, բանվորական ավանները և գյուղերը արմատապես կերպարանափոխվել են։ Երևանն իր նորակառույց հոյակապ շենքերով, լայն պողոտաներով, ընդարձակ հրապարակներով, հանգստի ու կուլտուրայի պարկերով դարձել է Սովետական Միության գեղեցիկ քաղաքներից մեկը։

Ռեսպուբլիկայում բնակարանային շինարարությունը էլ ավելի ուժեղ թափով է զարգանալու հինգերորդ հնգամյակում։ Այդ տարիներին միայն ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվելու են 466 հազար 270 քառակուսի մետր տարածությամբ բնակելի շենքեր։ Շինարարական այդ աշխատանքների վրա ծախսվելու է 551 միլիոն ռուբլի։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մշտական հոգատարություն են ցուցաբերում աշխատավորների առողջության պահպանման ուղղությամբ։ Միայն այս տարի մեր ռեսպուբլիկայում առողջապահության գծով կատարվել է 177 միլիոն 663 հազար ռուբլու ծախս։ 1953 թվականին մեր ռեսպուբլիկայի պրոֆմիութենական կազմակերպությունների գծով 21 հազար բանվորներ և ծառայողներ իրենց



հերթական արձակուրդն անց են կացրել միութենական և ռեսպուբլիկական սանատորիաներում և հանգստյան տներում։ Ավելի քան 16 հազար պիոներ-դպրոցականներ ամառային արձակուրդի ժամանակ հանգստացել են պիոներական ճամբարներում և մանկական սանատորիաներում։

Նշանակալից են հայ ժողովրդի ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի և արվեստի նվաճումները։

Ռեսպուբլիկայում հաջողությամբ իրականացվում է պարտադիր յոթնամյա կրթությունը գյուղական վայրերում և տասնամյա պարտադիր կրթությունը քաղաքներում։ Ներկայումս ռեսպուբլիկայում կա 1.200 դպրոց, որտեղ սովորում են մոտ 300 հազար աշակերտ և աշխատում են ավելի քան 16 հազար ուսուցիչ։

Մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն և գիտական հիմնարկ, իսկ ներկայումս Սովետական Հայաստանում կա 17 բարձրագույն ուսումնական հաստատություն և Գիտությունների ակադեմիա։

Այժմ ռեսպուբլիկայի 12 ստացիոնար ԲՈՒՀ-երում սովորում են ավելի քան 13.000,

իսկ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 7.189 մարդ: Միայն այս տարի ԲՈՒՀ-երը երկրին տվեցին շուրջ 500 մանկավարժ, 162 բժիշկ, 173 անասնաբույժ ու զոոտեխնիկ, 363 ինժեներ, 204 գյուղատնտես և այլ մասնագետներ:

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում աննախընթաց կերպով զարգացել է գիտությունը: Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան իր 30-ից ավելի գիտահետազոտական հաստատություններով լուրջ ավանդ է մտցնում սովետական առաջավոր գիտության զարգացման գործում: Այժմ Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայում աշխատում են 458 գիտական աշխատողներ, որոնցից դոկտորներ 34, գիտությունների թեկնածուներ 234 և այլն:

Ժողովրդական տնտեսության զարգացման հիման վրա ընդարձակվում է կուլտուրական հիմնարկների ցանցը: Ներկայումս ռեսպուբլիկայում գործում են 1439 գրադարան, 52 կուլտուրայի տուն, 964 գյուղական ակումբ, 14 թանգարան:

Տարեցտարի ծավալվում և բարելավվում է աշխատավորության կինոսպասարկումը: Այժմ, ռեսպուբլիկայում գործում է 325 կինոսարքավորում:



Հայ ժողովուրդը իր ազգային վերածննդի պանծալի 33-րդ տարեդարձը տոնում է սոցիալիզմի ու դեմոկրատիայի լագերի տնտեսական, քաղաքական և կուլտուրական շինարարության բնագավառում ձեռք բերած վիթխարի հաջողությունների, միջազգային անվտանգության և խաղաղության ամրապնդման համար նրա պայքարի հզոր վերելքի պայմաններում:

Սովետական իշխանությունը միշտ վարել է վարում է ամբողջ աշխարհում խաղաղությունը պահպանելու և կայունացնելու, բոլոր երկրների հետ բարի դրացիական հարաբերություններ, փոխադարձ շահերի հաշվառման սկզբունքով, միջազգային տնտեսական կապեր զարգացնելու և ամրապնդելու քաղաքականություն:

Մեր պարտիան ու Սովետական կառավարությունը միշտ ելնում են լենինյան այն դրույթից, որ տնտեսական երկու տարբեր սիստեմների խաղաղ գոյակցությունն ու համագործակցությունը լիովին հնարավոր է, եթե առկա է համագործակցելու երկուստեք ցանկություն, եթե պատրաստակամություն կա ստանձնած պարտականությունները կատարելու, եթե հարգվում է իրավահավասարության և ուրիշ պետությունների ներքին գործերին չմիջամտելու սկզբունքը:

Այն ժամանակ, երբ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները հետևողականորեն և վճռական կերպով զարգացնում են իրենց երկրների արտադրողական ուժերը, անշեղորեն բարձրացնում են աշխատավորների կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը, այդ նույն պահին կապիտալիստական երկրների ռեակցիոն կառավարությունները տենդորեն զբաղվում են սպառազինությունների մրցավազքով, նոր համաշխարհային պատերազմ սանձազերծելով, որի հետևանքով գնալով ավելի է վատթարանում կապիտալիստական երկրների աշխատավորական մասսաների վիճակը։

Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների էկոնոմիկայի զարգացումը տագնապի մեջ է դնում ԱՄՆ-ի և մյուս կապիտալիստական երկրների իմպերիալիստական շրջաններին։ Կործանման դատապարտված ռեակցիոն շրջանները վարում են երրորդ համաշխարհային պատերազմը սանձազերծելու հանցավոր քաղաքականություն։ ԱՄՆ-ի ագրեսիվ շրջանները անտեսելով միջազգային բոլոր նորմաները, շարունակում են «սառը պատերազմի» սառը քաղաքականությունը Սովետական Միու-



թյան և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ, տրամադրելով դրա համար հարյուր միլիոնավոր դոլարներ։ ԱՄՆ-ի ռեակցիոն շրջանները անասնական ատելությամբ լցված լինելով դեպի խաղաղության և դեմոկրատիայի լագերի երկրները, ռազմական բազաների խիտ ցանց են ստեղծում նրանց սահմանների մոտ։

ԱՄՆ-ի կառավարող շրջաններն ամեն տեսակ հանցավոր միջոցներով խանգարում են միասնական, դեմոկրատական ու խաղաղասեր Գերմանիա ստեղծելու գործը։ Նրանք ձգտում են Արևմտյան Գերմանիան դարձնել Եվրոպայում նոր պատերազմի օջախ։ Անգլո-ամերիկյան մագնատների այդ ագրեսիվ պլանները լիովին համընկնում են Բոննի ռևանշիստական նպատակներին՝ վերականգնել ֆաշիստական «վերմախտը» (հիտլերյան բանակը) և սանձազերծել Եվրոպայում նոր պատերազմ։

Հակառակ ԱՄՆ-ի ռեակցիոն շրջանների ագրեսիվ քաղաքականության, Սովետական Միությունը վարում է միջազգային հարցերը խաղաղ լուծելու և միջազգային լարվածությունը թուլացնելու հետևողական քաղաքականություն։ Խաղաղությունն ամրապնդելու և ժողովուրդների անվտանգությունն ապա-

հովելու գործը տակտիկայի և դիվանագիտական մանևրների հարց չէ, այլ Սովետական կառավարության արտաքին քաղաքականության հիմնական գիծն է։

Կորեայում արյունահեղության դադարեցումը և զինադադարի ստորագրումը խոշոր ավանդ էր միջազգային լարվածությունը թուլացնելու գործում։ Ագրեսիայի ձախողումը Կորեայում ցույց տվեց, որ Ասիայի ժողովուրդները լի են իրենց ազգային սուվերենությունն ու անկախությունը պաշտպանելու, Հեռավոր Արևելքում նոր համաշխարհային պատերազմի օջախ ստեղծելու ագրեսորների ձգտումներին հակահարված տալու վճռականությամբ։

Դեմոկրատիայի ու սոցիալիզմի երկրների հզոր լագերի տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած խոշոր նվաճումներն է՛լ ավելի են ոգեշնչում կապիտալիզմի լծի դեմ պայքարող աշխատավորական մասսաներին։

Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հզորացումը, խաղաղության ամրապնդման համար պայքարող ուժերի անընդհատ աճը ռեալ երաշխիք են հանդիսանում միջազգային ագրեսիվ ուժերի հանցավոր պլանների ձախողման համար։



***

Վերածնված հայ ժողովուրդը անցած 33 տարիների ընթացքում տնտեսական և կուլտուրական բնագավառի վիթխարի նվաճումները ձեռք է բերել ՍՄԿՊ-ի իմաստուն քաղաքականության շնորհիվ։

Պարտիայի 19-րդ համագումարի և պարտիայի ու կառավարության վերջերս ընդունած պատմական որոշումները նոր, անհետաձգելի խնդիրներ են դնում սովետական ժողովրդի առջև՝ կոմունիզմի կառուցման ճանապարհին։

Հայ ժողովուրդը պատվով կկատարի այդ խնդիրները։

Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում, հայ ժողովուրդը, կոմունիստական պարտիայի գլխավորությամբ վստահ կերպով գնում է դեպի կոմունիզմ։

# ՃԻՇՏ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Ս. ՄԱՐԳԱՐՅԱՆ

Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր գյուղի ժդանովի անվան կոլտնտեսության նախագահ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումի պատմական որոշումները լայն հնարավորություն և բարենպաստ պայմաններ են ստեղծում կոլտնտեսությունների հետագա աճման ու ամրապնդման համար։*

*Պարտիան ու կառավարությունը վճռական միջոցների են դիմել, որպեսզի սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման տեմպերը ետ չմնան արդյունաբերության զարգացման տեմպերից և սպառման առարկաների նկատմամբ բնակչության պահանջմունքների աճից։*

*Պետության կողմից դրամական միջոցների խոշոր հատկացումներ է կատարված*



*գյուղատնտեսությունը նոր, ժամանակակից տեխնիկայով ավելի շատ հագեցնելու, կոլտնտեսություններում էլեկտրիֆիկացման գործը զգալիորեն բարելավելու, հանքային պարարտանյութերի արտադրությունն ավելացնելու և կոլտնտեսություններին ցույց տրվող ագրոնոմիական ու զոոտեխնիկական օգնությունն ուժեղացնելու համար։*

*Պարտիայի և կառավարության կողմից առաջադրվող խնդիրները պատվով կատարելու, գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը տարեցտարի բարձրացնելու և այդ ճանապարհով կոլտնտեսությունը տնտեսապես ու կազմակերպորեն ամրապնդելու գործում վճռական նշանակություն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպումը։*

*Ճիշտ կազմակերպել աշխատանքը կոլտնտեսությունում, այդ ամենից առաջ նշանակում է լրիվ և արդյունավետ օգտագործել եղած անսպառ ռեզերվներն ու լայն հնարավորությունները, խելացի ու մտածված կերպով տեղաբաշխել աշխատող ձեռքերը, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսական աշխատանքում տա այն առավելագույնը, ինչ նա ընդունակ է տալու։*

*Մեր կոլտնտեսությունը Հոկտեմբերյանի*

շրջանի խոշոր և բազմաճյուղ տնտեսություններից մեկն է, որը մշակում է 463 հեկտար բամբակ, մոտ 300 հեկտար հացահատիկ, 116 հեկտար բանջարեղեն, 184 հեկտար խաղողի և պտղատու այգի, 150 հեկտար առվույտի ցանք, 25 հեկտար խորդենի և այլն։ Կոլտնտեսականները խնամում են 796 գլուխ խոշոր և մոտ 3500 մանր եղջերավոր անասուն, մեծ թվով խոզեր, ձիեր, թռչուններ և այլն։ Ինքնին հասկանալի է, որ մեծ ջանքեր պահանջող նման աշխատանքը չի կարելի կատարել առանց բարձր կազմակերպվածության, և հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոլտնտեսական լավ իմանա իր անելիքը, հստակ պատկերացում ունենա օղակի, բրիգադայի և կոլտնտեսության առջև դրված խնդիրների մասին, պայքարի այդ խնդիրները կենսագործելու համար։

Մեր կոլտնտեսության վարչությունը պարտկազմակերպության օգնությամբ գյուղատնտեսական տարվա հենց սկզբից կատարեց աշխատանքի բաժանում։ Կոլտնտեսության 1176 աշխատունակ կոլտնտեսականներից 964 հոգի աշխատանքի ուղարկվեցին դաշտավարական բրիգադաներում, իսկ մնացած կոլտնտեսականները աշխատանքի տեղավորվեցին անասնաբուծական



ֆերմաներում և կոլտնտեսային աշխատանքի մյուս ճյուղերում։

Աշխատող ձեռքերի այդ կարգի բաշխում կատարելիս կոլտնտվարչությունը ղեկավարվեց այն սկզբունքով, որպեսզի առավել արդյունավետ կերպով օգտագործվի յուրաքանչյուր կոլտնտեսականի փորձն ու աշխատանքային կարողությունը, որպեսզի լիովին ապահովվի ոչ միայն մեզ համար առաջատար կուլտուրա հանդիսացող բամբակի, այլև մյուս բոլոր կուլտուրաների դերագանց մշակությունն ու բարձր բերքատվությունը։ Կոլտնտվարչությունը մասնագետների հետ միասին անալիզի ենթարկեց աշխատանքի կազմակերպման նախորդ տարվա արդյունքներն ու թերությունները, պարզեց, թե առաջիկա գյուղատնտեսական տարում ինչպիսի աշխատանքներ պետք է նորից մեքենայացվեն, ինչպիսի աշխատանքներ են մնում ձեռքով կատարելու։

Այդ անալիզը կատարելուց հետո կոլտնտվարչությունը լրիվ պատկերացում ունեցավ աշխատանքը կազմակերպելու գործում անցյալ տարվա թերությունների մասին և խուսափեց դրանք կրկնելուց, մանրամասնորեն պարզաբանեց բարձր բերքի վարպետների փորձը և միջոցներ ձեռք առավ

այն կոլտնտեսությունում արմատավորելու համար և վերջապես, ճշգրիտ տվյալներ ունեցավ իր ձեռքի տակ, թե մշակվող ո՞ր կուլտուրայի գծով, ինչ աշխատանք պետք է կատարել առաջիկայում։ Դրանից հետո հեշտ է լինում բրիգադաների կոմպլեկտավորումը՝ աշխատող ձեռքերով և նրանց ապահովումն արտադրական միջոցներով։

Աշխատանքը ճիշտ կազմակերպելու գործում վճռական նշանակություն ունի բրիգադիրի ընտրությունը, որովհետև բրիգադիրը խոշոր դեմք է կոլտնտեսությունում։ Նա է, որ անմիջապես կատարում է աշխատանքի բաժանումը կոլտնտեսականների միջև, որը պետք է գիտենա յուրաքանչյուր կոլտնտեսականի աշխատանքային որակավորումը, նրա գործիմացությունը։ Բրիգադիրներ ընտրելիս մենք առաջնությունը տալիս ենք այն կոլտնտեսականներին, որոնք ունեն կոլտնտեսային աշխատանքի փորձ, մասնագիտական կրթություն, վայելում են կոլտնտեսականների համակրանքը և մանավանդ, աչքի են ընկնում բերքատվության սիստեմատիկ բարձրացման փաստական արդյունքներով։

Բրիգադիրն անպայման պետք է ունենա կոլտնտեսային աշխատանքի փորձ և մասնագիտական կրթություն, որպեսզի արդյու-



նավետ կարողանա օգտագործել ժամանակակից գյուղատնտեսական տեխնիկան, հակի մեքենայական և ձեռքի աշխատանքի որակին, ժամանակին և արդյունավետ կարողանա օգտագործել քիմիական պարարտանյութը, ճիշտ գնահատի կոլտնտեսականների աշխատանքը, կարողանա լավագույն ձևով օգտագործել բրիգադայում եղած արտադրական միջոցները և բոլոր հնարավորություններն ու ռեզերվները։

Մեր կոլտնտեսությունն ունի 12 բրիգադիր, որոնք ունեն միջնակարգ և թերի միջնակարգ կրթություն, երկար տարիների աշխատանքի փորձ։

Կոլտնտեսության վարչությունը և պարտկազմակերպության բյուրոն հանգամանորեն ուսումնասիրելով մի շարք կոլտնտեսականների կատարած աշխատանքը, եկան այն եզրակացության, որ նրանցից Մ. Միրաղյանին և Ա. Քյարիմյանին կարելի է առաջադրել բրիգադիր։ Նրանք երկար տարիներ աշխատելով կոլտնտեսային արտադրության մեջ, ցանքերի և այգիների մշակությունը բարելավելու գործում ձեռք էին բերել անհրաժեշտ փորձ և հմտություն, իրենց ազնիվ աշխատանքով և գործիմացությամբ վայելում էին կոլտնտեսականների համակրանքը։ Անճած այդ և մյուս կադրերին առաջ քաշելով

ղեկավար աշխատանքի, նրանց ղեկավարած բրիգադները հասան աչքի ընկնող հաջողությունների։ Հենց այս գյուղատնտեսական տարում լրիվ կանխվեցին բամբակի հիվանդությունները, 6—7 անգամ կատարվեց բամբակի ցանքերի քաղհան, որի շնորհիվ այժմ այդ բրիգադները բամբակի բարձր բերք են ստանում։

Նույն կարգի ընտրություն կատարվեց նաև օղակավարների նկատմամբ։ Ավելի քան 20 կոլտնտեսականներ առաջ քաշվեցին օղակավարներ։ Նրանցից շատերն ավարտել են ագրոզոոտեխնիկական եռամյա դպրոցը։

Ճիշտ կազմակերպելով աշխատանքը, կոլտնտեսությունը հասավ հետևյալ հաջողության։ Եթե 1951 թվականին աշխօրերի պարտադիր մինիմումը չէին կատարել 123 կոլտնտեսական, իսկ 1952 թվականին՝ 103 կոլտնտեսական, ապա այս տարվա գյուղատնտեսական աշխատանքների առաջին և երկրորդ շրջաններում բոլոր կոլտնտեսականները կատարել են աշխօրերի պարտադիր մինիմումը։

Բացի այդ, լուրջ աշխատանք է կատարվել փոքր երեխաներ ունեցող մայրերին կոլտնտեսային աշխատանքի մեջ ներգրավելու համար։ Կոլտնտեսությունն այժմ ունի 9 մանկամսուր, որից 7-ը դաշտային և մեկ



մանկապարտեզ։ Երեխաների խնամքը հանձնելով մանկամսուրներին ու մանկապարտեզին, 186 կոլտնտեսուհիներ ակտիվ կերպով մասնակցում են ցանքերի ու այգիների մշակությանը, բոլոր տեսակի դաշտային աշխատանքներին։

Բոլոր կոլտնտեսուհիներին աշխատանքի ներգրավելու նպատակով կոլտնտվարչությունը գործը կազմակերպել է այնպես, որ փոքրահասակ երեխաներ ունեցող կոլտնտեսուհիները, բազմազավակ մայրերը աշխատանք են ստացել գյուղին մոտիկ հողամասերում և այգիներում։ Դրա շնորհիվ կանանց մասնակցությունը գյուղատնտեսական աշխատանքներին տարեցտարի ավելանում է։ Այսպես, օրինակ, 1951 թվականին բազմազավակ մայրերից կոլտնտեսությունում աշխատել են 53 հոգի, 1952 թվականին՝ 78 հոգի, 1953 թվականին 132 հոգի։

Աշխատանքի ճիշտ կազմակերպման շնորհիվ բարելավվեց ցանքերի և այգիների մշակությունը, ինչպես նաև անասունների խնամքը։ Ավելացան կոլտնտեսության եկամուտները։ Միայն բանջարաբուծությունից այս տարի կոլտնտեսությունը ստացել է ավելի քան 1 միլիոն 250 հազար ռուբլու եկամուտ։ Այդ նույն ժամանակաշրջանում կոլտնտեսությունը վաճառքի է հանել մոտ

1000 տոննա ձմերուկ, սեխ, վարունգ և այլն։ Անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ կոլտնտեսությունում ապրանքային ելույթն ավելացել է 20 տոկոսով։

Միաժամանակ մեծ չափերով ավելացավ կոլտնտեսականների եկամուտը։ Կոլտնտեսական Ա. Նիրեմյանը իր և իր կնոջ աշխօրերի դիմաց անցյալ տարի ստացավ 12 հազար 307 ռուբլի դրամ, 2 տոննա 608 կգ. հացահատիկ, 625 կգ. խաղող, Լուսիկ Գևորգյանը, որ աշխատել էր իր տղայի հետ միասին, աշխօրերի դիմաց ստացավ 8 հազար 826 ռուբլի դրամ, 2 տոննա հացահատիկ և կես տոննա խաղող, Ք. Սաղոյանը՝ 14 հազար ռուբլի դրամ, մոտ 3 տոննա հացահատիկ, 720 կգ. խաղող և այլն։

Այս տարի կոլտնտեսականներն իրենց աշխօրերի դիմաց ավելի շատ դրամ, հացահատիկ, կաթնամթերք, բանջարեղեն և գյուղատնտեսական մթերքներ կստանան։

Զինված Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշմամբ, կոլտնտեսականները կանեն ամեն բան, որպեսզի կոլտնտեսությունը առաջիկայում է՛լ ավելի ամրապնդվի տնտեսապես և կազմակերպորեն։

---



# ԱԳԻՏԱՑԻԱՆ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՄԵՋ ԸՍՏ ԲՆԱԿԱՎԱՅՐԻ

Լ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Երևանի քաղկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչի տեղակալ

Աշխատավորության մեջ կատարվող ամենօրյա քաղաքական ագիտացիան կարևորագույն միջոց է պարտիայի հետ լայն մասսաների կապն ամրապնդելու և ուժեղացնելու գործում։ Նպատակասլաց, բովանդակալից, սուր և ճշմարտացի ագիտացիան մեծ ուժ է մոբիլիզացնելու աշխատավորությանը, հարազատ Կոմունիստական պարտիայի կողմից երկրի առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Պարտիան միշտ էլ խոշոր ուշադրություն է դարձրել աշխատավորների շրջանում կազմակերպվող մասսայական-քաղաքական աշխատանքին։

ՍՄԿՊ 19-րդ համագումարը պարտիական կազմակերպություններից պահանջեց իդեոլոգիական ներգործության բոլոր միջոցնե-

րը, այդ թվում նաև ագիտացիան ուղղել սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության գործին։

«Պարտիայի իդեոլոգիական աշխատանքը,— ասաց ընկ. Գ. Մալենկովը պարտիայի 19-րդ համագումարում,— կարևոր դեր պետք է խաղա կապիտալիզմի մնացուկներից, նախապաշարմունքներից և հին հասարակության վնասակար տրադիցիաներից մարդկանց գիտակցությունը մաքրելու գործում»։

Կատարելով պարտիայի 19-րդ համագումարի պատմական որոշումները, Երևանի Կիրովի անվան գործարանի պարտիական կազմակերպությունը ագիտացիոն-մասսայական լուրջ աշխատանք է ծավալել ոչ միայն գործարանի բանվոր-ծառայողների մեջ, այլև նրանց ընտանիքների անդամների շրջանում՝ ըստ բնակավայրի և այդ գործում այժմ ունի աշխատանքի դրական փորձ։ Այսպես, օրինակ, պարտկազմակերպության կողմից առանձնացված է մոտ 100 ագիտատոր, որոնք երրորդ մաս կոչվող բանվորական ավանի բնակիչների, հատկապես տնային տնտեսուհիների և թոշակառուների համար կազմակերպել են և անցկացրել ագիտացիոն հատուկ զրույցներ՝ ՍՍՌՄ Գերա-



գույն Սովետի հինգերորդ սեսիայի, ՍՄԿԿ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի գյուղատնտեսության, անասնաբուծության, առևտրի հետագա զարգացման, ինչպես նաև արդյունաբերական ապրանքների և պարենային մթերքների արտադրությունն ավելացնելու վերաբերյալ պարտիայի և կառավարության որոշումների մասին։

Գործարանի կոմունալ բաժնի պարտկազմակերպության ագիտկոլեկտիվը երրորդ մասի № 5 շենքի բնակիչների համար օրերս կազմակերպեց զրույց՝ մեր երկրում պարենային ապրանքների արտադրությունն ընդլայնելու և նրանց որակը բարելավելու մասին։

Ագիտատորները ունկնդիրներին հանգամանորեն պատմեցին, թե ինչպես Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը անդադրում հոգ են տանում աշխատավորության նյութական բարեկեցությունը բարելավելու մասին։

Ագիտացիոն աշխատանքում առանձնապես աչքի ընկավ ագիտատոր Ա. Հովհաննիսյանը։ Նախքան ագիտացիան սկսելը, նա մանրամասնորեն ծանոթացել էր նույն շենքի առաջին և երկրորդ հարկերի բնակիչների հետ և մտերիմ զրույցի միջոցով պարզել,

թե նրանց ինչն է հետաքրքրում, ինչի մասին են ցանկանում լսել նրանք։

Նախապատրաստական այդ աշխատանքից հետո, նա կազմել էր ագիտացիոն զրույցի իր պլանը, հավաքել անհրաժեշտ թվեր և փաստեր, ինչպես նաև ցուցադրական նյութեր՝ դիագրամաներ, պլակատներ և այլն։ Այսպես, երբ նա ունկնդիրներին սկսեց պարզաբանել ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտկոմի որոշումը՝ «Պարենային ապրանքների արտադրությունն ընդլայնելու և նրանց որակը բարելավելու մասին», խելացի կերպով օգտագործեց նաև «Պրավդա»-ի նոյեմբերի 1-ի համարում տպագրված սովետական ժողովրդի բարեկեցությունը պատկերող դիագրամաները, թվերն ու փաստերը։ Ագիտատորը միաժամանակ հետաքրքիր տեղեկություն տվեց կապիտալիստական աշխարհում աշխատավորների աղքատության և սովի վերաբերյալ։ Նա ցույց տվեց մի դիագրամա ամերիկյան մոնոպոլիաների շահույթների աճման մասին, թե ինչպես նրանք տարեցտարի հարստանում են աշխատավորների հաշվին։ Եթե ԱՄՆ-ի մոնոպոլիաների շահույթը 1939 թվականին կազմում էր 6,5 միլիարդ դոլար, իսկ 1949 թվականին՝ 27,1



միլիարդ դոլար, ապա 1953 թվականին այն հասնում է 44,6 միլիարդ դոլարի։ Այդ նույն ժամանակաշրջանում ԱՄՆ-ում միլիոնավոր գործազուրկներ տանջվում են սովից և ծայրահեղ աղքատությունից, մի կերպ քարշ տալով իրենց թշվառ գոյությունը։

Այնուհետև ագիտատորը պատմում է կապիտալիստական մյուս երկրների՝ Անգլիայի, Իտալիայի, Ֆրանսիայի, Արևմտյան Գերմանիայի աշխատավորների ծանր վիճակի մասին, բերելով կոնկրետ փաստեր այդ երկրներում կյանքի թանկության, գործազրկության վերաբերյալ։

Այսպիսով, ունկնդիրները պարզ պատկերացում ստանում երկու աշխարհի՝ սոցիալիզմի երկրի մասին, որտեղ ամեն ինչ արվում է մարդու պահանջմունքները առավելագույն չափով բավարարելու համար և կապիտալիստական աշխարհի մասին, որտեղ աշխատավոր մարդուն կեղեքում են մի բուռ շահագործողներ՝ առավելագույն շահույթ կորզելու նպատակով։

Ագիտացիոն աշխատանքի նման ուսանելի փորձ ունեն նաև ագիտատորներ Բ. Անտոնյանը, Ս. Հայրապետյանը և շատերը։ Նրանք նույնպես սիստեմատիկաբար լինում են բնակելի շենքերում և ունկնդիրնե-

րի համար կազմակերպում են քաղաքական-
գիտական թեմաների շուրջը խմբական և
անհատական զրույցներ։

Որպեսզի բնակչության մեջ ըստ բնակա-
վայրի կատարվող ագիտացիոն-բացատրա-
կան աշխատանքը լինի ավելի մասսայա-
կան, գործարանի պարտկազմակերպության
կոմիտեն լայնորեն օգտագործում է հասա-
րակական, կուլտուրական վայրերը, ինչպես,
օրինակ, հանգստի և կուլտուրայի պարկը,
կինո-թատրոնը, գրադարաններն ու ակումբ-
ները։ Այժմ պարտկոմիտեի կողմից մշակ-
ված ագիտացիոն-մասսայական աշխա-
տանքի պլանին համապատասխան, գրեթե
ամեն օր, երրորդ մասի կուլտուրայի և հան-
գստի պարկում բնակչության համար տեղի
են ունենում հատուկ դասախոսություններ,
զեկուցումներ և զրույցներ։ Այստեղ ագի-
տատորները հաճախակի ունկնդիրների հա-
մար կազմակերպում են կինո-նկարների
կոլեկտիվ դիտումներ, որին նախորդում է
անհրաժեշտ բացատրական աշխատանքը։

Գործարանի բանվորական ավանում գոր-
ծում են 5 ակումբ և 3 մասսայական գրա-
դարան։ Ագիտատորների օգնությամբ տնա-
յին տնտեսուհիները ակտիվ մասնակցու-
թյուն են ցույց տալիս ակումբներում և



գրադարաններում կազմակերպվող կուլտու-
րական - լուսավորական աշխատանքներին։

Գործարանի պարտկազմակերպության
կոմիտեն մշտական օգնություն է ցույց տա-
լիս ագիտատորներին, նրանց համար կազ-
մակերպելով սեմինար պարապմունքներ,
խորհրդակցություններ և պարտիայի ու կա-
ռավարության որոշումների վերաբերյալ
զեկուցումներ։

Ըստ բնակավայրի կատարվող ագիտա-
ցիոն-մասսայական աշխատանքը խոշոր
նշանակություն ունի աշխատավորության
կոմունիստական դաստիարակությունն ա-
պահովելու գործում։

# ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՐՈՒՄԸ ԱՄՆ-Ի, ԱՆԳԼԻԱՅԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱՅԻ ՄԻՋԵՎ ԼՈՆԴՈՆՅԱՆ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹՅՈՒՆՈՒՄ

*Երևանի Տրամվայի-տրոլեյբուսի Վարչության վագոնա-վերանորոգման արհեստանոցի ագիտատոր Ս. Կոստիկյանը և տրոլեյբուսի վերանորոգման արհեստանոցի ագիտատոր Ք. Գասպարյանը դիմել են խմբագրությանը հետևյալ հարցով. «Ինչպիսի հակասություններ դրսևորվեցին ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների հոկտեմբերի 16—18-ը տեղի ունեցած լոնդոնյան խորհրդակցությունում»: Տպագրում ենք պատասխան այդ հարցին:*

***

*Ընթացիկ տարվա հոկտեմբերի 16-ից մինչև 18-ը Լոնդոնում տեղի ունեցավ ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների խորհրդակցություն, որին մասնակցում էին՝ Դալլեսը (ԱՄՆ), Իդենը (Անգլիա) և Բիդոն (Ֆրանսիա): Այդ խորհրդակցությանը մասնակից երկրների միջև առաջ եկան նոր և ավելի լուրջ տարաձայնություններ:*

*ԱՄՆ-ին, Անգլիային և Ֆրանսիային չհաջողվեց համաձայնության գալ միջազգային քաղաքականու-*



*թյան մի շարք կարևորագույն հարցերում և որ ԱՄՆ-ի քաղաքականությունը դեմ առավ ամերիկյան կրտսեր պարտնյորների՝ Անգլիայի և Ֆրանսիայի լուրջ դիմադրությանը:*

*Ամերիկյան դիվանագիտությունը (այդ խոստովանում է և ամերիկյան մամուլը) լոնդոնյան խորհրդակցությունում իր գլխավոր խնդիրն էր համարում վերացնել մի շարք լուրջ հակասություններ, որոնք վերջին ժամանակներս սրվել էին ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի միջև և մի շարք հարցերի վերաբերյալ «ընդհանուր քաղաքականություն» մշակել:*

*Ամերիկյան դիվանագիտության այդ խնդիրը խորհրդակցությունում ձախողվեց:*

*Խորհրդակցությունում քննարկվեցին Եվրոպայում և Հեռավոր Արևելքում տարվող միջազգային քաղաքականության առանձին հարցեր:*

*Հիմնական հարցը, կապված Եվրոպայում տիրող դրության հետ, տվյալ խորհրդակցությունում ԱՄՆ-ը համարում էր այսպես կոչված «եվրոպական բանակի» ստեղծման հարցը: ԱՄՆ-ի արտաքին գործերի մինիստր Դալլեսը ամեն կերպ ձգտում էր ճնշման միջոցով Ֆրանսիային և համաձայնության մյուս մասնակիցներին ստիպել ամենակարճ ժամանակամիջոցում վավերացնել Փարիզի և Բոննի պայմանագրերը, որոնցից և բխում է եվրոպական բանակի ստեղծման համաձայնագիրը: Բայց այդ հարցում ԱՄՆ-ի փորձերը կրախի մատնվեցին: Ֆրանսիայի հասարա-*

կական կարծիքը, ինչպես նաև բուրժուազիայի և կառավարող շրջանների. շատ ներկայացուցիչներ կտրականապես դեմ են դուրս գալիս Փարիզի և Բոննի պայմանագրերին և «եվրոպական բանակ» ստեղծելու նախագծին, որովհետև լավ հայտնի է, որ ամերիկյան ագրեսորների մտադրությամբ այդ նախագիծը նախ և առաջ հետապնդում է մի նպատակ՝ վերականգնել Արևմտյան Գերմանիայի ռևանշիստական, միլիտարիստական ուժերը։

Ֆրանսիայի հասարակական կարծիքը դեմ է այդ նախագծին, քանի որ այն ուղղված է Ֆրանսիայի ազգային շահերի դեմ, իր մեջ թաքցնում է լուրջ վտանգ Ֆրանսիայի համար, որը բազմիցս տուժել է գերմանական ագրեսիայից։ Ինչ վերաբերվում է Ֆրանսիայի կառավարող շրջաններին, ապա վերջիններս նույնպես գոհ չեն այդ նախագծից, որովհետև նրանք սկզբում հույս ունեին առաջատար դիրք գրավել միավորված «եվրոպական բանակում», իսկ այժմ համոզվեցին, որ ԱՄՆ-ը առաջնությունը տալիս է Արևմտյան Գերմանիային։

Եվրոպական բանակի հարցի կապակցությամբ խորհրդակցությունում բացահայտվեցին նաև ԱՄՆ-ի և Անգլիայի միջև եղած հակասությունները։ Ճիշտ է, Անգլիան ամեն կերպ ճգնում էր հօգուտ ԱՄՆ-ի, Ֆրանսիային մղել դեպի համաձայնագրի վավերացումը, բայց դրա հետ մեկտեղ ինքը՝ անգլիական կառավարությունը, ամեն կերպ ձգտում է հեռու մնալ այդ



գործից և իրեն չկաշկանդել ոչ մի համաձայնագրով։ Այսպիսով, Անգլիայի նկատմամբ ևս ԱՄՆ-ին չհաջողվեց այդ հարցում հասնել անհրաժեշտ միաբանության։

Հենց խորհրդակցության նախօրյակին և խորհրդակցության օրերին անգլո-ամերիկյան հակասությունները առավել ևս սրվեցին կապված Իսրայել-տրանսիորդանյան սահմանագծերի հետ, որովհետև, ինչպես հայտնի է, այդ շրջանում ԱՄՆ-ը Իսրայելի պետությանն օգտագործում է որպես պլացդարմ արաբական երկրներում Անգլիայի դիրքերի դեմ պայքարելու համար։

Անգլիային լուրջ դժգոհություն պատճառեց նաև ԱՄՆ-ի և ֆրանկոյական Իսպանիայի միջև կնքված պայմանագիրը, որով ԱՄՆ-ը այդ երկրում ստանում է ռազմական բազաներ, որը սպառնում է Ջիբրալթարում անգլիացիների ունեցած դիրքերին։ Վերջապես ԱՄՆ-ի քաղաքականության նկատմամբ Անգլիայի անբավականությունը սուր կերպով հասունացավ նաև ԱՄՆ-ի և Հունաստանի միջև ռազմական համաձայնագրի կապակցությամբ, որը նույնպես սպառնում է Միջերկրական ծովում Անգլիայի ունեցած դիրքերին։

Այս բոլորը չէր կարող չազդել լոնդոնյան խորհրդակցության ընթացքի վրա և չուժեղացնել նրա մասնակիցների միջև եղած տարաձայնությունները։

Լոնդոնյան խորհրդակցությունում շոշափված հարցերից մեկը Տրիեստի հարցն էր։ Զգտելով այն բա-

նին, որպեսզի Իտալիան վավերացնի «եվրոպական բանակի» մասին համաձայնագիրը, ԱՄՆ-ը ցանկանում է Տրիեստի տերիտորիայի մի մասը (այսպես կոչված «Ա» գոտին) հանձնել Իտալիային։ Իտալական կառավարությունը ամեն կերպ ձգձգում է «եվրոպական բանակի» վերաբերյալ համաձայնագրի վավերացումը, այդ հարցը օգտագործելով Տրիեստի տերիտորիայի մի մասի հափշտակման համար։ Բայց ամերիկյան իմպերիալիստները այդպիսի խաղ սարքելով Տրիեստի շուրջը, այդ շրջանում ստեղծում են ծայրահեղ լարված հարաբերություններ Իտալիայի և Հարավսլավիայի միջև և նպաստում են հակասությունների հետագա սրմանը իրենց պարտնյորների միջև։

Խորհրդակցությունում քննարկված հեռավոր-արևելյան հարցերից ամենից ավելի կարևորը Կորեայում քաղաքական կոնֆերենցիայի հրավիրման հարցն է։ Այս հարցի կապակցությամբ երևան եկան լուրջ հակասություններ ԱՄՆ-ի և Անգլիայի միջև։ Դալլեսին, չնայած նրա բազմաթիվ փորձերին, չհաջողվեց Կորեայում քաղաքական կոնֆերենցիայի հրավիրման հարցում հասնել Անգլիայի կողմից ԱՄՆ-ի դիրքերի պաշտպանմանը։

Ինչպես հայտնի է, կորեական հարցը ազգային միասնության և կայուն խաղաղության ճանապարհով լրիվ կարգավորելու համար նախատեսվում է հրավիրել Կորեայի վերաբերյալ քաղաքական կոնֆերենցիա։

Սակայն ԱՄՆ-ը ամեն կերպ ձգտում է խանգարել



նախատեսված կոնֆերենցիայի նորմալ աշխատանքը։ ԱՄՆ-ի այդպիսի դիրքը նոր և առաջ հանդես է գալիս նախատեսված կոնֆերենցիայի մասնակիցների կազմի հարցում։ ԱՄՆ-ը դեմ է կոնֆերենցիայում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի մասնակցությանը, ինչպես նաև չեզոք երկրների և հատկապես Սովետական Միության մասնակցությանը։ Պետք է նշել, որ լոնդոնյան խորհրդակցությունում ԱՄՆ-ի այդ դիրքը լիակատար պաշտպանություն չգտավ մասնավորապես Անգլիայի կողմից, որը համաձայնվեց այդ կոնֆերենցիայում Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի և Սովետական Միության մասնակցությանը։

Այսպիսով, անգամ լոնդոնյան խորհրդակցության մասին ոչ լրիվ տեղեկությունները, որոնք թափանցել են մամուլում, խոսում են այն լուրջ տարաձայնությունների մասին, որ կա ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի միջև միջազգային քաղաքականության մի շարք հարցերի վերաբերյալ։

ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների լոնդոնյան խորհրդակցությունը հանդիսանում է Ատլանտյան բլոկի մասնակից երկրների միջև խորացող հակասությունների մի նոր ապացույց։

Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՐԳԵՐԻ ՀԱՍՏԱՏՄԱՆ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

1. 33 տարի առաջ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ, հայ ժողովուրդն ազատագրվեց օտարերկրյա վարձկանների, դաշնակների բռնապետությունից։

2. Սովետական Հայաստանը ՍՍՌՄ ծաղկուն ռեսպուբլիկաներից մեկն է։

3. Սովետական Հայաստանը բարձր զարգացման հասած սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության, գիտության և կուլտուրայի երկիր է։

4. Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի աշխատավորները նոր հաջողություններով են դիմավորում Հայաստանում սովետական իշխանության հաստատման 33-րդ տարեդարձը։

5. ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումը, ինչպես ՍՍՌՄ, այնպես էլ Հայաստանի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացման ծավալուն ծրագիրն է։



6. Գյուղատնտեսության հետագա զարգացման համար մղվող պայքարը՝ համաժողովրդական գործ է։

7. Ռեսպուբլիկայի անասնապահության արագ զարգացումն ու վերելքը սոցիալիստական գյուղատնտեսության անհետաձգելի և կենսական կարևորագույն խնդիրն է։

8. Մեր Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողների պարտքն է՝ կարճ ժամանակում հասնել կարտոֆիլի և բանջարեղենի արտադրության ավելացման։

9. ՄՏԿ-ների աշխատանքի բարելավումը և կոլտնտեսությունները տնտեսապես ու կազմակերպչորեն ամրապնդելու գործում նրանց դերի բարձրացումը՝ գյուղատնտեսության հետագա զարգացման գրավականն է։

10. Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունն անդադրում հոգ են տանում մեր երկրում բարձրորակ պարենային ապրանքների առատության համար։

11. Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը վճռական միջոցներ են ձեռնարկել սովետական առևտրի հետագա զարգացման համար։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

### 1—4 ԹԵՄԱՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ — «Կեցցե՛ Սովետական Հայաստանը»։ Երկեր, հատոր 4-րդ, էջ 458—459։

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ— Ճառ Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում: *«Ս. Հ.», 1950 թ., 11 մարտի։*

Գ. Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ 16-րդ համագումարում Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, առանձին բրոշյուր, 1952 թ., «Ագիտատորի բլոկնոտ», № 18, 1952 թ.։*

## 5—6 ԹԵՄԱՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, *8 օգոստոսի, 1953 թ., Հայպետհրատ, 1953 թ.։*

Օրենք՝ Գյուղատնտեսական հարկի մասին: *Ընդունված ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, 8 օգոստոսի, 1953 թ.։ Հայպետհրատ, 1953 թ.։*

*ՍՍՌՄ Գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ ընդունված 1953 թ. սեպտեմբերի 7-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ։ Հայպետհրատ, 1953 թ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին: *Զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում 1953 թվականի սեպտեմբերի 3-ին։ Հայպետհրատ, 1953 թ.։*

Գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բարձր բերքի համար: *«Պրավդա»-ի սեպտեմբերի 24-ի առաջնորդող հոդվածը, տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թ. սեպտեմբերի 25-ի համարում։*



## 7-ՐԴ ԹԵՄԱՅԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը* «Երկրում անասնաբուծության հետագա զարգացման միջոցառումների և կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների տնտեսությունների կողմից պետությանը անասնաբուծական մթերքների պարտադիր հանձնումների նորմաների իջեցման մասին»: *«Ս. Հ.», 1953 թվականի սեպտեմբերի 26—ի և 27-ի համարները։*

Անասնաբուծության արագ վերելքի շահերի օգտին: *«Պրավդա»-ի սեպտեմբերի 26-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1953 թ. սեպտեմբերի 27-ի համարում։*

## 8-ՐԴ ԹԵՄԱՅԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝* «1953—1955 թ. թ. կոլտնտեսություններում և սովխոզներում կարտոֆիլի և բանջարեղենի արտադրությունն ավելացնելու միջոցառումների և մթերումների մասին»: *«Ս. Հ.», 1953 թ. սեպտեմբերի 29-ի և 30-ի համարները։*

## 9-ՐԴ ԹԵՄԱՅԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝* «Մեքենա-տրակտորային կա-

յանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին»: *«Ս. Հ.», 1953 թվականի հոկտեմբերի 1-ի և 2-ի համարները։*

Անասնաբուծության արագ վերելքի շահերի օգտին: *«Պրավդա»-ի սեպտեմբերի 26-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի, 1953 թ. սեպտեմբերի 27-ի համարում։*

## 10-ՐԴ ԹԵՄԱՅԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում, *8 օգոստոսի, 1953 թ.։ Հայպետհրատ, 1953 թ.։*

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝* «Պարենային ապրանքների արտադրությունն ընդլայնելու և նրանց որակը բարելավելու մասին»: *«Ս. Հ.»-ի, հոկտեմբերի 30-ի և 31-ի համարները, 1953 թ.։*

Բարձրորակ պարենային ապրանքների առատության համար: *«Պրավդա»-ի հոկտեմբերի 30-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի հոկտեմբերի 31-ի համարում, 1953 թ.։*

## 11-ՐԴ ԹԵՄԱՅԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումը՝* «Սովետական առևտրի հետագա զարգացման միջոցառումների մասին»: *«Ս. Հ.», 23 հոկտեմբերի, 1953 թ.։*



Սովետական առևտուրը հասցնել նոր, ավելի բարձր աստիճանի: *«Պրավդա»-ի հոկտեմբերի 23-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի հոկտեմբերի 24-ի համարում, 1953 թ.։*

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ— Ապրանքաշրջանառության հետագա ծավալման և պետական, կոոպերատիվ ու կոլտնտեսային առևտրի կազմակերպումը բարելավելու միջոցառումների մասին, *զեկուցում առևտրի աշխատողների Համամիութենական խորհրդակցությունում, 1953 թվականի հոկտեմբերի 17-ին։ Տպագրված է «Ս. Հ.»-ի հոկտեմբերի 25-ի, 26-ի և 27-ի համարներում, 1953 թ.։*

Կազմակերպել ժողովրդական սպառման առարկաների արտադրության շեշտակի վերելքը: *«Պրավդա»-ի հոկտեմբերի 28-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի հոկտեմբերի 29-ի համարում, 1953 թ.։*

---

**Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

*ՎՖ 05386* *Պատվեր 1080* *Տպաքանակ 9.000*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կիրովյանցի № 8, 1953 թ.։*